## Անգլիոյ դաշինքին որոշումը եւ Ֆրանսա

Անգլիական կառավարութիւնը մտադիր է ծանուցագրով մը Ֆրանսայի հաղորդել դաշինքի արտակարգ նիստին մէջ տրուած որոշումները, վստահութիւն ներշնչելու եւ այս երկրին գործակցութիւնը ապահովելու համար։

Այս առթիւ թերթերը կը գրեն թէ այդ նիստին մէջ, լիազօրութիւն տրուած է Անգլիոյ արտաքին նախարարին, որպէսզի գործերը վարէ մինչեւ սեպտեմբեր 4, ի հարկին Լոնտոն կանչելով նախարարները, որոնք օդափոխութեան գացած են։

Իրազեկներ կը հաւաստեն թէ անգլ. կառավարութեան առաջին գործը պիտի ըլլայ հաշտարար ձեռնարկներ կատարել դիւանագիտական ճամբով, առանց նախաձեռնութիւն ստանձնելու, այլ իր աջակցութիւնն ընծայելով Ֆրանսայի։ Եթէ այս միջոցը ձախողի, չպիտի պահանջէ անմիջապէս եւ ստուապէս գործադրել Ազգերու Դաշնակցութեան ուխտը, այլ պիտի ջանայ ժամանակ շահիլ եւ ուշացնել թշնամութեանց պայթումը, առաջարկելով քննիչ յանձնախումբ մը կազմել եւն.։ Վերջին պահուն, երբ այս միջոցն ալ ձախողի, այն ատեն պիտի յանձնարարէ ճնշողական միջոցներու դիմել, անշուշտ խորհրդակցելով միւս պետութեանց հետ։ Հաւանական է որ այս վերջին միջոցը անմիջապէս առաջարկուի, եթէ Իտալիա մերժէ ներկայ ըլլալ Ա. Դ. խորհուրդին։

## Թուրք պաշտօնատար մը անհետացած

Պոլսէն Լոնտոնի թերթերուն կը հեռագրեն թէ քանի մը օրէ ի վեր անհետացած է արտաքին նախարարութեան մէկ պաշտօնատարը, խորհրդաւոր պարագաներու մէջ։Զայն գտնելու եղած փորձերը ապարդիւն անցած են մինչեւ հիմա։ Կը կարծուի թէ այս պաշտօնատարը արտասահմանփախած է, միասինտանելով նախարարութեան ծածկագիր բանալին, որ փոփոխութեան ենթարկուեցաւ վերջերս, առժամաբար եւ պիտի վերաքննուի բոլորովին։

Հեռագիրը կ'աւելցնէ թէ Թուրքիա ելեկտրական մեքենայ մը պիտի գնէ հեռագիրներու թուագրման համար, եւ թէ այդ գործիքը կրնայ աւելի քան մէկ միլիոն տարբեր հիւսուածքներ արտադրել։

## Լիբանանի նախագահին մահը

Պ. Շարլ Տէպպաս, Լիբանանի հանրապետութեան առաջին նախագահը, մեռաւ ուրբաթ օր, կարճատեւ հիւանդութենէ մը յետոյ։

Հանգուցեալը իրաւագիտութեան վարդապետ էր։ Ուսումը լրացնելէ վերջը, եղաւ դատական տնօրէն։ Երբ Լիբանանի հանրապետութիւն հռչակուեցաւ (1926), ընտրուեցաւ նախագահ, միաձայնութեամբ։ Շրջանը լրացնելէ յետոյ, վերընտրուեցաւ 1929-ին, վեհապետական իրաւունքներով։ Իր պաշտօնավարութեան ընթացքին գնահատելի ծառայութիւններ մատոյց։ Հայ գաղթականութիւնն ալ մեծապէս երախտապարտ է հանգուցեալին։ Ցիսուն տարեկան էր։

---



---



---



---



---

ԿԱԹՈՂ. ՆՈՒԻՐԱԿԸ ԿԸ ՔԱՐՈԶԷ

Այսօր Կիրակի, Փարիզի Հայոց Եկեղեցւոյն մէջ կը քարոզէ Կաթ. Նուիրակ՝ Տ. Գարեգին Արքեպիսկ. Յովսէփեան։

## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

Ցեկին Նոյեմզար Մանուկեան կը փնտռէ իր եղբայրը՝ Մանուկ Մանուկեանը (Գասթէմունիի Տէվրէկ գիւղէն)։ Անկէ առաջ կը գտնուէր 149 rue Lafayette, Փարիզ։

Լուր ունեցողներէն կը խնդրուի իմացնել իր քրոջը՝ Նոյեմզար Մանուկեանի, 23, rue du Turen, Marseille.

---

ԱՇԽԱՏԱՆՔԻ ԻՐԱՒՈՒՆՔԷ ԶՐԿՈՒԱԾՆԵՐՈՒՆ

Բոլոր այն Հայերը, որ ինքնութեան թուղթի վերանորոգման պատճառով աշխատանքի իրաւունքէ զրկուած են, կը հրաւիրուին իրենց անունները արձանագրել տալ Գաղթականաց Օֆիսին — բաց՝ 71, Avenue Kléber կամ 15, Rue Jean Goujon.


Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN)
17. Rue Damesme. PARIS (13)




---

















---

«ՅԱՌԱՋ»Ի ԹԵՐԹՕՆԸ (18)

## “ԵՐԿԱՄԵԱՅ ՊԱՆԴԽՏՈՒԹԻՒՆ Ի ՀԱՊԷՇՍՏԱՆ”

Ցօրինեց՝ Տիմոթէոս վրդ. Սափրիչեան

Մեր նամակը գրել լմնելէն ետքը չատ չանցաւ՝ զմրազդաբար Թէոդորոս Անգղիոյ բանակին իր վրայ ուղղակի գալը լսելով, հոկտեմբերին վերջերը իր բանակատեղւոյն եղած քանի մը տուները կրակի տալով կը թողու Կէլայի — Թափօրը, ու Մակտելայի անառիկ լերան քիչ քիչ մօտենալով հոն կ'ապաստանի, որ ութ կամ ինն օր աւելի հեռու է մեզմէ։ Այս ալ իր մտանենք բռելու՝ որ անգղիական բանակին գալուն առջի լուրը լսելով, այն օրէն աչքէ կը հանէ իւր քովն եղող բոլոր ապիտակ մարդիկը, որոնք բառ մեծի մասին Եւրոպացիք էին, եւ Մակտելայի մէջ բանտարկեալ ապիտակներուն պէս առնել կ'ըլլան իրեն, եւ սրանց ցաւէն կը հրամայէ որ անոնց շնորհած զարդարուն ջորիները ետ առնելով՝ ուրիշ անպիտան ջորիներ հեծցուցած իւր հետ Մակտելա բերեն, ինչպէս պատմեցին մեզ։

Թէոդորոսի հեռանալուն լուրը եւ անգղիական բանակին գալը երբ լսեցինք մենք, խոր տրտմութեան մէջ թաղուած մնացինք, կարծես թէ խաւար ամպեր մեր չորս դին պատեցին, մտատանջութեան ալիքներու մէջ բաշխուած մեր միտքը ծփել, եւ մեր գլխաւոր ապագային մթութեանց մէջ կը նշմարէինք, եւ արդէն տառ չանցած սկսանք զգալ անոր դառնութիւնները, եւ չղթայի օղակներու նման իրար ագուցուած մէկ նեղութենէ ուրիշ նեղութեան մէջ գահավէժ եղանք ձեռքէ ձեռք ընկնելով, եւ ալու նման խաղալիկ մնացինք վայրենի ժողովուրդ մէջ։

Ապստամբք գրեթէ Թէոդորոսի բոլոր երկրին տիրած էին, եւ Ճըլէկայի իշխանութիւնը միայն ազատ կը մնար՝ Թագաւորին մօտ ըլլալուն համար, ուրկէ վախնալով ապստամբք չէին համարձակեր աշաւելու Ճըլէկայի վրայ, եւ ոչ երկրացիք կրնային խլրտիլ դէպ լուծը վերցնելու յայտնապէս։ Այս երկրին հարաւակողմը կ'ընկնի Կոճամի մեծ իշխան Թէլլաք — Հայլօ, որուն ներքեւ կը գտնուէին ուրիշ ինքնագլուխ ապստամբներու խումբեր։ Նոյն միջոցներուն այս իշխանը մեռնելով՝ թէպէտ եւ իր որդին տեղն անցաւ, բայց հարճորդին՝ ալ ունենալով անկէ մեծ, եւ ժառանգութեան իրաւունքի կռիւ մը ծագելով մէջերնին՝ ապստամբեցաւ հարազատ որդւոյն դէմ, եւ երկրին մէկ մասին տիրեց գիւղացւոց հաճութեամբ։ Նոյնպէս Ճըլէկայի հիւսիսակողմը կը գտնուի Թըրրո — Կովազի երեւելի ապստամբ իշխանն իւր ապստամբական խումբովը։

Ապստամբները Թէոդորոսին Մակտելա լեռը հեռանալը լսելնուն՝ կ'ուզեն փորձ փորձել Ճըլէկայի երկրին տիրելու, եւ չորս դիէն կը յարձակին կուգան հոն։ Կոճամի իշխանութեանը տակ եղող Ալէմի անուն ապստամբը, որուն երեք հազարի չափ զօրքերը Թէոդորոս թէէ անցուցեր է. յառաջուց, կը յարձակի կուգայ ձոյ կայի իշխանութեան Տակուսա կոչուած երկրին վրայ, որ հրէու սուրբ նահապարհ է Ճըլէկայէն, եւ հոն բանակի։ Այս լուրը մեր ականջը հասնելուն՝ քունը աչուըներս փախաւ, երկիւղը մեր սիրտերը պատեց, չէինք գիտեր մեր վախճանին վրան ինչ իտածելնիս, եւ եթէ աւելի վէպի եղած տեղը յառաջ գալու ըլլայ գզայինք որ մեր բանը լմնցած է. որուն ոչ գիւղացւոց, ոչ զօրաց եւ մեր իշխանաց վրայ վստահութիւն ունէինք, որոնցմէ մեծ մասը ապստամբելու՝ քան թէ թագաւորը թողլու հակամէտ էին վասն զի մէկը չկար որ թագաւորը ամէնքն ալ ինքնագլուխ ըլլալ կ'ուզէին եւ երկիրը միշտ խռովութեան մէջ լալ կը փափաքէին, որպէսզի իրենց չար խորհուրդները ի գործ դնեն աներկիւղ ինչպէս գայլը որ ու ընելու համար ամպամած ու մառախլապատ եղանակներ կը փնտռէ

(Շար.)

---

